Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
գաղափարական
աշխատանքի
բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՀՈՒՆԻՍ 11 1963

ԱՅՍ ՏԱՐՎԱ
ՀՈՒԼԻՍԻ 30-ԻՆ
ԼՐԱՆՈՒՄ Է
**ՌՍԴԲԿ**
ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ
**60-ԱՄՅԱԿԸ**

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


Էջ

**Դեպի ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 60-ամյակը**

*Թեմաներ ագիտատորների զրույցների և զեկուցումների համար* . . . . . 3

**Նյութեր զրույցների համար**

Գ. ԻՍԱՀԱԿՅԱՆ — *Պարտիայի մշտական հոգատարությունը ժողովրդի բարօրության նկատմամբ* . . . . . . . 6

**Մեթոդական օգնություն ագիտատորներին**

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— *Կոլեկտիվ ընթերցանության մասին* . . . . . . . 16

**Օգնություն ագիտատորներին**

*Օգտվել ագիտատոր Սարոկինի խորհուրդներից* . . 24

**Օգտագործիր զրույցի ժամանակ**

Ար. ՍԱՐԳՍՅԱՆ— *Մեր ռեսպուբլիկայի գիշերօթիկ դպրոցները* . . . . . . 34

**Մեր ռեսպուբլիկայի նշանավոր մարդիկ**

Կ. ՊՈՂՈՍՅԱՆ— *Մարտիրոս Սարյան* . . . 42

*Արտասահմանյան հումոր* . . . . . 47


---


Խմբագրության հասցեն — *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։*

## СОДЕРЖАНИЕ


стр.

НАВСТРЕЧУ 60-ЛЕТИЮ II СЪЕЗДА РСДРП

Темы для бесед и докладов агитаторов . . 3

МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД

Г. Исаакян — Постоянная забота партии о благосостоянии народа . . . . . 6

МЕТОДИЧЕСКАЯ ПОМОЩЬ АГИТАТОРАМ

А. Карапетян — О коллективных чтениях . . . . . . . . . . 16

В ПОМОЩЬ АГИТАТОРАМ

Пользуйся советами агитатора Сорокина . 24

ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕД

Ар. Саргсян — Интернаты нашей республики . . . . . . . . . . . 34

ЗНАТНЫЕ ЛЮДИ НАШЕЙ РЕСПУБЛИКИ

К. Погосян — Мартирос Сарян . . . . 42

Иностранный юмор . . . . . . . . 47






Адрес редакции: Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.






# ԹԵՄԱՆԵՐ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Վ. Ի. Լենինի պայքարը Ռուսաստանում մարքսիստական պարտիա ստեղծելու համար.

2. ՌՍԴԲՊ երկրորդ համագումարի պատմական նշանակությունը.

3. Վ. Ի. Լենինը և Անդրկովկասյան մարքսիստական սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները.

4. Լենինյան «Իսկրա»-ի դերը Անդրկովկասում սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններ ստեղծելու գործում.

5. Կովկասյան սոցիալ-դեմոկրատների մասնակցությունը ՌՍԴԲՊ երկրորդ համագումարի նախապատրաստմանը և անցկացմանը.

6. Անդրկովկասի լենինյան իսկրայական սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների պայքարը բուրժուական նացիոնալիզմի դեմ, հանուն պրոլետարական ինտերնացիոնալիզմի.

7. Անդրկովկասյան սոցիալ-դեմոկրա-

տական կազմակերպությունները և ՌՍԴԲՊ Կովկասյան միության ստեղծումը.

8. Բոլշևիկների պարտիան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակի ոգեշնչող ու կազմակերպիչ.

9. ՍՄԿՊ-ի և սովետական ժողովրդի պայքարի պատմական փորձը ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը կյանքում կենսագործելու համար.

10. ՍՄԿՊ-ի փորձի միջազգային նշանակությունը.

11. ՍՄԿՊ-ի պայքարը հանուն միջազգային կոմունիստական շարժման համախմբման.

12. ՍՄԿՊ-ի ինտերնացիոնալիստական տրադիցիաները և միջազգային բանվորական ու ազգային-ազատագրական շարժումներին աջակցելու մասին.

13. ՍՄԿՊ-ն սովետական ժողովրդի մարտական փորձված ավանգարդն է.

14. ՍՄԿՊ-ն սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմի հաղթանակի ոգեշնչողն ու կազմակերպիչն է.

15. Պարտիայի պայքարը պարտիական և պետական կյանքում լենինյան նորմաների վերականգնման ու զարգացման համար.

16. ՍՄԿՊ-ն ամբողջ սովետական ժողովրդի պարտիան է.



17. Պարտիայի քաղաքական և կազմակերպական գործունեությունը կոմունիզմի կառուցման ժամանակակից էտապում.

18. Ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարման վերակառուցումը կոմունիստական շինարարության ծրագրի հաջող կենսագործման կարևորագույն միջոցառում է.

19. Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը պարտիայի և ժողովրդի գլխավոր տնտեսական խնդիրն է.

20. ՍՄԿՊ-ի գործունեության ուժեղացումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում.

21. Լենինյան խաղաղ գոյակցության սկզբունքը տարբեր սոցիալական կառուցվածք ունեցող պետությունների հետ ՍՄԿՊ արտաքին քաղաքականության հիմքն է.

22. ՍՄԿՊ-ի դերը մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման ներկա էտապում.

23. Պարտիայի անհաշտ և հետևողական պայքարը հանուն մարքսիստական-լենինյան թեորիայի մաքրության, ընդդեմ օպորտունիզմի և ռևիզիոնիզմի, դոգմատիզմի ու աղանդավորության.

24. Հայաստանի կոմունիստական պարտիան ՍՄԿՊ-ի մարտական ջոկատներից է։

# ՊԱՐՏԻԱՅԻ ՄՇՏԱԿԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

*Մարդու բարօրությունը, նրա նյութական և հոգևոր պահանջմունքների լի ու լի բավարարումը կոմունիստական պարտիայի վեհ նպատակն է, նրա մշտական հոգատարության առարկան։*

*Ընդունելով իր նոր ծրագիրը պարտիան խնդիր է դրել՝ Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակը կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ։ Դրա համար անհրաժեշտ է երկու հիմնական պայման· նախ՝ ամբողջ հասարակական արտադրության, աշխատանքի արտադրողականության և ազգային եկամտի այնպիսի աճ, որը կգերազանցի կապիտալիզմի հնարավորությունները, երկրորդ՝ անհրաժեշտ է ապահովել աճող արտադրական ուժերի և հասարակական հարստությունների օգտագործումը ամբողջ ժողովրդի շահերի համար։*

*Սոցիալիստական սիստեմը ժողովրդի հա-*



*մար ամենաբարձր կենսամակարդակ ապահովելու այդ երկու պայմաններն էլ ստեղծել*

*Արտադրության միջոցների հանրային սեփականությունը և բաշխման սոցիալիստական սկզբունքը լայն ասպարեզ են բացում արտադրական ուժերի բուռն զարգացման ու ստեղծված բարիքները արտադրողների կողմից ամենալայն չափերով օգտագործելու համար։ Հայտնի է, որ արդյունաբերության արտադրանքի միջին աճի տարեկան տեմպերը Սովետական Միությունում երեք անգամ բարձր են, քան ամենազարգացած կապիտալիստական երկրներում։ Սովետական երկրում անհամեմատ արագ տեմպերով են աճում ինչպես աշխատանքի արտադրողականությունը, այնպես էլ ազգային եկամուտը, որի երեք քառորդը անմիջականորեն բաշխվում է աշխատավորների միջև։*

*Սոցիալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքների պահանջներից և ժողովրդի կենսական շահերից ելնելով, կոմունիստական պարտիան մեր երկրում աշխատավորների ամենաբարձր կենսամակարդակ ապահովելու նպատակով, նախագծում և իրագործում է միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս, որոնք ընդգրկում են ինչպես արտադրության, այնպես էլ բաշխման ոլորտը։*

Նախ կանգ առնենք այն միջոցառումների վրա, որոնք վերաբերվում են արտադրության ոլորտին, նրա անշեղ զարգացմանը։

Յոթնամյակի չորս տարվա պլանները սոցիալիստական արդյունաբերությունը գերակատարել է։ Պլանից դուրս երկիրը ստացել է 26 միլիարդ ռուբլու արտադրանք։ Միայն 1962 թվականին Սովետական Միության արդյունաբերությունը թողարկեց ավելի շատ արտադրանք, քան նախապատերազմյան հնգամյակների բոլոր տարիներին։ Չորս տարվա ընթացքում կառուցվել և շահագործման է հանձնվել երեք հազար 700 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն և ստեղծվել են այնպիսի արտադրական կարողություններ, որոնք հավասար են նախապատերազմյան բոլոր հնգամյակների տարիներին ստեղծված արտադրական կարողություններին։

Հատկապես մեծ են ծանր ինդուստրիայի ձեռք բերած նվաճումները, որը ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման հիմքն է։ Արագ տեմպերով է աճում թեթև և սննդի արդյունաբերությունը։ Լրացուցիչ կապիտալ ներդրումներ է կատարվել թեթև և սննդի արդյունաբերական նոր ձեռնարկությունների կառուցման և գյուղատնտեսու-



թյան զարգացման համար։ Այդ միջոցառումները արդեն տալիս են իրենց դրական արդյունքները։ Յոթնամյակի չորս տարում երկիրը նախատեսված պլանից դուրս ստացավ 7,3 միլիարդ մետր գործվածքեղեն, 88 միլիոն զույգ կաշվե կոշկեղեն, 617 հազար հեռուստացույց, 413 հազար լվացքի մեքենա, ավելի քան 500 միլիոն ռուբլու կահույք և այլ ապրանքներ։

Փոքր չեն նաև սոցիալիստական գյուղատնտեսության ձեռք բերած նվաճումները։ 1962 թվականին հացահատիկի համախառն բերքը կազմեց 9 միլիարդ փութ՝ 1953 թվականի հինգ միլիարդ փթի փոխարեն։ Տարեցտարի ավելանում է նաև գյուղատնտեսական հումքի և անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Սակայն պարտիան հոգ է տանում ոչ միայն սոցիալիստական արտադրության, այդ թվում նաև ժողովրդական սպառման ապրանքների ավելացման մասին, այլև միջոցառումներ է իրագործում ժողովրդի ռեալ եկամուտների ավելացման և բաշխման սոցիալիստական սկզբունքի հետագա կատարելագործման ուղղությամբ։

Սոցիալիզմի ժամանակ նյութական բարիքները բաշխվում են աշխատավորների

միջև ըստ աշխատանքի քանակի և որակի անհատական վարձատրության կարգով, ինչպես և սպառման հանրային ֆոնդերի հաշվին։ Սպառման հանրային ֆոնդերը նոր սոցիալ-տնտեսական կատեգորիա են, որոնք հատուկ են սոցիալիստական հասարակարգին։ Այդ ֆոնդերի միջոցով հասարակության անդամներին է վերադարձվում նրանց ստեղծած հավելյալ արդյունքի մի մասը։ Մինչդեռ կապիտալիզմի պայմաններում շահագործող դասակարգերը ոչ միայն յուրացնում են բանվորների ստեղծած ամբողջ հավելյալ արժեքը, այլև տարբեր ճանապարհներով՝ հարկերի, բնակարանային և կոմունալ սպասարկման բարձր վարձի և առևտրական գանցի միջոցով կորզում են նրանց աշխատավարձի մի մասը։

Սպառման հանրային ֆոնդերի դերը և նշանակությունը ՍՍՌՄ-ում գնալով աճելու է։ Բավական է նշել, որ այդ ֆոնդերի հաշվին վերջին չորս տարում 50 միլիոն սովետական քաղաքացիներ ապահովվեցին նոր բնակարաններով։ Մեր ռեսպուբլիկայում միայն պետական կենտրոնացված կապիտալ ներդրումների միջոցով, նույն ժամանակամիջոցում շահագործման է հանձնվել 97 հազար 700 բնակարան, այսինքն ավելի շատ,



քան սովետական իշխանության առաջին երեսուն տարիների ընթացքում։ Սպառման հանրային ֆոնդերի հաշվին տարեցտարի ընդարձակվում է հիվանդանոցների, դպրոցների, բուժարանների, կուլտուրական և կոմունալ սպասարկման հիմնարկների ցանցը։ Այդ ֆոնդերի հաշվին է, որ մեր երկրում իրականացվում է ձրի պարտադիր ուսուցումն ու բուժսպասարկումը։ Մոտ 20 միլիոն սովետական քաղաքացիներ ստանում են կենսաթոշակ։ Ըստ որում վերջին երկու տարում ծերության համար տրվող կենսաթոշակի մինիմալ չափերը կրկնապատկվեցին։

Պարտիան իրագործում է բազմաթիվ միջոցառումներ անհատական վարձատրության սիստեմը բարելավելու և դրա հիման վրա ժողովրդի դրամական եկամուտները, ինչպես նաև նրանց ռեալ եկամուտները, բարձրացնելու համար։

Նշենք այդ միջոցառումներից մի քանիսը։ Վերջին տարիների ընթացքում մեր երկրում կատարվեց աշխատանքային օրվա կրճատում և աշխատավարձի կարգավորում։ Այդ կապակցությամբ զգալի չափով բարձրացվեց ցածր աշխատավարձ ստացող բանվորների ու ծառայողների աշխատավարձի մինիմումը։ Այդ միջոցառումների իրագործման շը-

նորհիվ վերջին հինգ տարում բանվորների և ծառայողների դրամական եկամուտները ավելացան 4 միլիարդ ռուբլով։ Հայտնի է, որ 1960 թվականի մայիսի 7-ին ՍՍՌՄ Գերագույն սովետը օրենք ընդունեց աշխատավորներից գանձվող հարկերը վերացնելու մասին։ Դրա հետևանքով անցած երկու տարվա ընթացքում բանվորների ու ծառայողների դրամական եկամուտները ավելացան ևս 760 միլիոն ռուբլով։

Ինչպես հայտնի է 1958 թվականից ՍՍՌՄ-ում դադարեցված են ներքին փոխառությունները։ Այդ կապակցությամբ միայն ռեսպուբլիկայի աշխատավորները տարեկան խնայում են շուրջ 20 միլիոն ռուբլի։

Ժողովրդի դրամական եկամուտների ինչպես և ռեալ եկամուտների բարձրացման շնորհիվ տարեցտարի բարձրանում է նրանց գնողունակությունը և հատկապես նրանց կենսամակարդակը։

Այդ տեսակետից հատկանշական է, ինչպես ժողովրդական սպառման ապրանքների վաճառքի, այնպես էլ անձնական սպառման հիմնական ֆոնդերի աճը։ 1961 թվականին մեր ռեսպուբլիկայի բանվորներն ու ծառայողները քաղաքներում և քաղաքատիպ վայրերում իրենց խնայողությունների հաշվին



և պետական վարկի օգնությամբ կառուցել են 234 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր, այսինքն մոտ երկու և կես անգամ ավելի, քան 1956 թվականին։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսականները 1956—1961 թվականների ընթացքում կառուցել են ավելի քան 52 հազար տուն։ 1962 թվականին մեր ռեսպուբլիկայի աշխատավորները իրենց անձնական օգտագործման համար ունեցել են մոտ 2,5 անգամ ավելի շատ ավտոմեքենա և մոտոցիկլետ, քան 1958 թվականին։

Ժողովրդի կենսամակարդակի, նրա գնողունակության բարձրացման մասին է վկայում նաև ապրանքաշրջանառության ծավալի աճը։ Վերջին 4 տարում Սովետական Միության մեջ պետական և կոոպերատիվ ապրանքաշրջանառության ծավալը ավելացել է 32 տոկոսով։ Աշխատավորները տարեցտարի ավելի շատ ապրանքներ են գնում, ընդարձակվում է պետական կոոպերատիվ առևտրի ցանցը։

Հնգամյակի չորս տարում բոլոր աշխատավորների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով աճեցին 18 տոկոսով, այդ թվում 1962 թվականին՝ 3 տոկոսով։ Ըստ որում կոլտնտեսականների ռեալ եկամուտ-

ները մեկ աշխատողի հաշվով ավելացան 5 տոկոսով, իսկ բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները՝ 2 տոկոսով։

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումին տված զեկուցման մեջ ընկեր Խրուշչովն ասաց, որ մենք թեև գերակատարել ենք արդյունաբերական արտադրանքի թողարկման 4 տարվա պլանները, բայց մենք չենք կատարել մեր տնտեսական զարգացման գլխավոր ցուցանիշը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքը։ Ավելին, մեր շատ տնտեսական շրջաններում խախտվել է սոցիալիզմի կարևոր տնտեսական օրենքներից մեկը՝ աշխատանքի արտադրողականության և աշխատանքի աճի հարաբերակցության օրենքը։ Թույլ է տրված աշխատավարձի ավելի արագ աճ, քան աճել է աշխատանքի արտադրողականությունը։ Մինչդեռ ժողովրդի շահերը պահանջում են, որպեսզի աշխատանքի արտադրողականությունը աճի ավելի արագ։ Անհրաժեշտ է, որպեսզի ամեն մեկը գիտենա, որ միմիայն աշխատանքի արտադրողականության անընդհատ պրոգրեսիվ աճն է, որ տանում է դեպի ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը։ Արտադրանքի աճի երեք քառորդը



մենք ստանալու ենք աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Պարտիան հաստատակամորեն իրագործելով լենինյան քաղաքականությունը, ջանք չի խնայում մեր ժողովրդի բարօրության, նրա խաղաղ և ապահով կյանքի ու է՛լ ավելի երջանիկ ապագայի համար։ Այդ են վկայում նաև 1963 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման պլանը և պետական բյուջեն։ Ժողովրդական տնտեսության զարգացման 1963 թվականի պետական պլանով մեր ռեսպուբլիկայի ազգային եկամուտը աճելու է 12 տոկոսով, ժողովրդի դրամական եկամուտները աճելու են 8,2 տոկոսով, պետական և կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառությունը կավելանա 7,8 տոկոսով, 18 հազար ընտանիքներ կստանան նոր բնակարաններ։

1963 թվականը մեր երկրի աշխատավորները հաջողությամբ սկսեցին։ Այժմ նրանք աշխատում են ու պայքարում մեկ նշանաբանով՝ ուժ ու եռանդ չխնայել մեր հայրենիքի հզորացման համար, ժողովրդի բարօրության համար։

Գ. ԻՍԱՀԱԿՅԱՆ
Տնտեսագիտական գիտությունների թեկնածու

# ԿՈԼԵԿՏԻՎ ԸՆԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Ագիտատորների սեմինարներում ու հրահանգչական խորհրդակցություններում հաճախ վեճեր են գնում այն մասին, թե հարկ կա՞ արդյոք ներկա պայմաններում կոլեկտիվ բարձրաձայն ընթերցանություններ անցկացնել։ Ընդ որում, բարձրաձայն ընթերցանության հակառակորդները իրենց կարծիքը արդարացիորեն պատճառաբանում են նրանով, որ այժմ անհամեմատ բարձրացել է մեր աշխատավորների կուլտուրական մակարդակը, նրանց գրագիտության աստիճանը։ Այժմ մեր բոլոր բանվորները, կոլտնտեսականները և ծառայողները գրագետ են, իսկ նրանց տրամադրության տակ կա լայն տարածում գտած մեր մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը։ Եվ իրոք, այդ բոլորը ճշմարիտ է։*

*Սակայն, բարձրաձայն ընթերցանության հակառակորդները հաշվի չեն առնում մի կարևոր հանգամանք, որ այն փաստաթղթե-*





*րը, հատկապես պարտիայի ու կառավարության որոշումները, որոնք տպագրվում են, պետք է շուտափույթ կերպով հասցվեն աշխատավոր մասսաներին, մեր բնակչությանը։ Իսկ այդ հնարավոր է անել միայն ընթերցանության միջոցով, նույն օրը, թերթը ստանալու պահին։*

*Յուրաքանչյուր ագիտատորի համար թերթը լավագույն օգնական է։ Ագիտատորը թերթերում կարդում է մեր երկրի կյանքին վերաբերող կարևոր իրադարձությունների մասին, սովետական ժողովրդի աշխատանքային սխրագործությունների և այն ամենի մասին, որ տեղի է ունենում միջազգային ասպարեզում։ Մեր մամուլը ագիտատորներին զրույցի առատ նյութ է տալիս, նրանց ուշադրությունը բևեռում կյանքի ամենակարևոր հարցերի վրա։*

*Այստեղ ագիտատորի խնդիրը պետք է լինի այն, որ նա ընթերցանության հետ միասին ագիտացիոն զրույց ծավալի կամ, ինչպես ասում են, կամրջակ գցի թերթի էջից դեպի բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների առօրյա գործերը։*

*Բարձրաձայն ընթերցանության և կոլեկտիվի առօրյա խնդիրների հետ նրա կապի ձևերն ու մեթոդները բազմազան են։ Մի դեպքում*



այդ կարելի է անել, երբ թերթում զետեղված է պարտիայի Կենտրոնական Կոմիտեի, կամ սովետական կառավարության կարևոր որոշում, կամ էլ որևէ հաղորդագրություն, որի մասին անհրաժեշտ է անպայման տեղեկանան մեր աշխատավորները։ Այդպիսի դեպքում ագիտատորը կարող է կազմակերպել տվյալ նյութերի բարձրաձայն ընթերցանություն։ Չէ՞ որ նոր լույս տեսած թերթում զետեղելով իր գաղափարները, պարտիան խնդիր է դնում ամբողջ երկրի առջև։ Ուստի դրա ընթերցումը ամբողջ կոլեկտիվի համար, ագիտատորի առաջնահերթ խնդիրը պետք է հանդիսանա։ Կամ մի ուրիշ անգամ, ագիտատորը կարող է ընտրել թերթի մի այնպիսի հոդվածի ընթերցանություն, որպեսզի զրույցը կապի նաև տեղական հարցերի հետ։ Այդ կարող են լինել, օրինակ, արտադրանքի որակի, աշխատանքի կարգապահության, սոցիալիստական համակեցության մասին և այլ հարցեր։

Ագիտատորները իրենց աշխատանքի պրակտիկայից կարող են մտաբերել, թե ինչպես թերթերի էջերում քննադատական հոդվածների, ֆելիետոնների, կամ երգիծական նյութի բարձրաձայն ընթերցանությունից անմիջապես հետո բռնկվել են խիստ



վիճաբանություններ, որոնց ընթացքում պարզվել է, որ հասարակական կարգի խախտողներ, լոդրեր, պորտաբույծներ կան նաև իրենց կոլեկտիվում։

Ագիտատորները ընթերցանության համար նյութերը պետք է ուշի ուշով ընտրեն, որպեսզի դրանք լինեն հետաքրքիր և զրույցը սկսելու նյութ տան։

Ինչպես կարելի է հանդուրժել, օրինակ, լենինականի հեծանիվի գործարանի ագիտատոր Վ. Վիրաբյանի բարձրաձայն ընթերցանությունը, երբ ագիտացիոն ժամին, նա վերցրել է «Բանվոր» թերթը և նրանում զետեղված գրեթե բոլոր հոդվածները սկզբից մինչև վերջ ընթերցել ունկնդիրների համար ու ոչ մի խոսք չի ասել գործարանի աշխատանքների վերաբերյալ։ Մինչդեռ, թերթի հենց այդ համարի առաջնորդող հոդվածում քննադատական խոսք էր ուղղված հեծանիվի գործարանի հասցեին։ Եվ պատահական չէ, որ Վիրաբյանի ունկնդիրները ժամանակ առ ժամանակ նկատելի կերպով, դադարում էին իրենց ագիտատորին լսելուց, սկսում էին հորանջել, ագիտացիոն այդ ժամը համարելով ժամավաճառություն։

Որպեսզի ագիտատորը չդատապարտվի ունկնդիրների կողմից նման անտարբեր վե-

րաքերմունքի, նա նախօրոք պետք է լավ պատրաստվի հերթական զրույցին, խնամքով ընտրի ընթերցման ենթակա նյութը, հոգեպես ապրի նրանով, ոգևորվի։ Միայն այդպիսի պայմաններում բարձրաձայն ընթերցանությունը և ագիտատորի խոսքը կարող է տպավորիչ ու ներգործուն լինել։

Փորձված ագիտատորը նույնիսկ միջազգային ամենախոշոր պրոբլեմները կարող է սերտորեն կապել իր կոլեկտիվի առջև ծառացած արտադրական խնդիրների հետ։ Ենթադրենք խոսքը վերաբերում է Սովետական Միության միջազգային հեղինակության բարձրացմանը։ Ագիտատորը անմիջապես ունկնդիրներին պարզաբանում է այն միտքը, որ մեր երկրի հզորությունը կախված է յուրաքանչյուր բանվորի, կոլտնտեսականի, ծառայողի անձնվեր աշխատանքից։ Ագիտատորը պարտավոր է ընդգծել այն միտքը, որ աշխատանքի ինչպիսի բնագավառում էլ գտնվելիս լինի և ինչ աշխատանք էլ կատարելիս լինի սովետական մարդը, նա պարտավոր է հիշել, որ իր ավանդն է մուծում կոմունիզմի կառուցման, մեր հայրենիքի հզորության բազմապատկման գործին։

Տասնյակ, հարյուրավոր կենդանի օրինակներ և փաստեր են տպագրվում մեր մա-



մուլում այն մասին, թե ինչպես աշխատանքի
այս կամ այն բնագավառում սովետական
մարդիկ իսկական արիություն ու խիզախու-
թյուն են ցուցաբերում։ Նրանց աշխատանքի
փորձը արժանի է ուսումնասիրման ու ընդ-
օրինակման։ Ո՞վ, եթե ոչ ագիտատորը,
պետք է այդ գործը վերցնի իր վրա և զրույ-
ցի ժամերին կազմակերպի առաջավոր փոր-
ձի մասսայականացումը։

Մեր ամբողջ երկրում ով չգիտի, օրինակ,
Վալենտինա Գագանովայի աշխատանքային
սխրանքների մասին։ Նա ունի հազարավոր
ընդօրինակողներ։ Իսկ դա արդյունք է այն
բանին, որ նրա փորձի մասին հազարավոր
ագիտատորներ իրենց հերթական զրույցնե-
րում ոչ թե միայն պատմել, այլև իրենց ուն-
կնդիրների մոտ արթնացրել են Գագանովա-
յի հոյակապ օրինակին հետևելու ձգտումներ։

Իսկ ինչպիսի հոյակապ նյութեր իրենց
ունկնդիրներին կարող են թերթերից ու ամ-
սագրերից կարդալ, աշխատանքային նորա-
ն ր սխրագործությունների կոչող նյութեր
ստնել գյուղական ագիտատորները ուզբե-
կական մեխանիզատոր-բամբակագործուհի
Թուրսունա Ախունովայի կամ ուկրաինական
ունվանի օղակավարուհի Նադեժդա Զագլա-
դայի մասին, որը մեր մամուլում հանդես

եկավ «Բարձր պահեք հողագործի պատիվը»
հաչակավոր կոչով։ Այդպիսի օրինակներ մեր
մամուլի էջերում հաճախ են լինում և ագի-
տատորի առաջնահերթ խնդիրն է մասսա-
յականացնել նրանց փորձը։
— Դժվար է նկարագրել այն բուռն հե-
տաքրքրությունը,— ասում է Ստեփանավա-
նի արտադրական վարչության Վարդաբլուրի
կոլտնտեսության ագիտատոր Ս. Ղուկասյա-
նը,— որ առաջացավ մեր կոլտնտեսական-
ների մեջ Սոցիալիստական աշխատանքի հե-
րոս Նադեժդա Գրիգորևնա Զագլադայի
«Թանկ գնահատեցե՛ք հողագործի պատիվը»
հոդվածի կապակցությամբ։ Նադեժդա Գրի-
գորևնայի հոդվածի ընթերցումից հետո,
նրա առաջ քաշած հարցերին նվիրեցի մի
քանի զրույցներ, որոնց ընթացքում կոլ-
տնտեսականները մտքեր էին փոխանակում,
առաջարկություններ անում. յուրաքանչյուրը
խորհրդակցելով իր խղճի հետ իրեն հաշիվ
էր տալիս, թե արդյոք ամեն բան անում է
հանրային արտադրությանն իր ուժերը լիո-
վին նվիրելու, հողագործի պատիվը բարձր
պահելու համար։ Այդպիսի զրույցների ըն-
թացքում հարկ էր լինում խոսել նաև աշխա-
տանքի կազմակերպման ու ղեկավարման
գործում եղած թերությունների մասին, մատ-



նանշել այն կոլտնտեսականներին, որոնք
աշխատանքում իրենց լավ չեն արդարաց-
նում։
— Մեկ ուրիշ անգամ,— շարունակում է
ագիտատորը,— երբ մեր ֆերմայի աշխա-
տողների համար կարդում էի հարևան՝ Հո-
բաձի գյուղի կոլտնտեսության առաջավոր
կթվորուհի Նազիկ Դավոյանի փորձի մասին
հոդվածը, բոլորը միահամուռ ցանկություն
հայտնեցին տեսնել ու լսել նրան։ Հանդի-
պումը շուտով տեղի ունեցավ։ Անկաշկանդ
զրույցի ընթացքում բոլորն էլ համոզվեցին,
թե Նազիկ Դավոյանը ինչպես բարձր է պա-
հում կոլտնտեսականի պատիվը։ Այժմ հա-
րևան գյուղի փարոսը իր բազմաթիվ հե-
տևորդներն ունի մեր կոլտնտեսությունում։
Այսպիսով, ագիտատորի կողմից կազմա-
կերպվող բարձրաձայն ընթերցանությունը,
վերջին հաշվով, պետք է հետապնդի մի նը-
պատակ՝ օգնել ունկնդիրներին, որպեսզի
նրանք ստանձնած պարտավորությունները
գերազանց ցուցանիշներով կատարեն։

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քաղաքական լուսավորության
ռեսպուբլիկական տան վարիչի տեղակալ

## ՕԳՏՎԵԼ ԱԳԻՏԱՏՈՐ ՍՈՐՈԿԻՆԻ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻՑ

Երկար ժամանակ մեր ռեսպուբլիկայի ագիտատորները ուսումնասիրում էին Լենինգրադի Սերգո Օրջոնիկիձեի անվան Բալթիական նավաշինական գործարանի ագիտատոր Ն. Սորոկինի փորձը: Անվանի ագիտատոր Սորոկինի ագիտացիոն աշխատանքի փորձը ջերմ հավանության է արժանացել մեր ագիտատորների կողմից: Նրանցից շատերը նամակներ և թղթակցություններ են գրել՝ տեղեկացնելով խմբագրությանը, որ իրենք ոչ միայն հավանություն են տալիս ագիտատոր Սորոկինի փորձին, այլև աշխատում են օգտվել նրա խորհուրդներից և նրա օրինակով ագիտացիան դարձնել կոնկրետ ու նպատակասլաց: Օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլտնտեսության ագիտկոլեկտիվի ղեկավար Ս. Սմբաթյանը գրում է, որ Լենինգրադի Սերգո Օրջոնիկիձեի անվան Բալթիական նավաշինական գործարանի ագիտատոր, փականագործ Ն. Սորոկինի



հոդվածը «Ագիտատոքի պարտքի մասին» ջերմ ընդունելություն գտավ իրենց կոլտնտեսության ագիտկոլեկտիվում: Ագիտատորները հետաքրքրությամբ ընթերցում են հոդվածը և ջերմ հավանություն տալիս:

— Ես մանրամասն կարդացել եմ այդ հոդվածը,— գրում է նա,— Սորոկինը մեր սրտից է խոսում: Նրա առաջ քաշած այժմեական ու կարևոր հարցերը իրավամբ հետաքրքրում ու հուզում են բոլորիս: Նա խոսում է այն մասին, թե ինչպես անել, որ ագիտատորի ներդրումը մեր ընդհանուր կոմունիստական կաթսայի մեջ ավելի շատ, ավելի ծանրակշիռ լինի:

Պարտիան մեր ագիտատորներին վստահել է մեծ ու պատվավոր գործ: Նրանցից պահանջվում է դաստիարակել մարդկանց, պաշտպանել կոմունիստական սկզբունքը: Միանգամայն տեղին է ասված հոդվածում, որ ագիտատորները պետք է աշխատեն մեծ բարեխղճությամբ, համախմբեն մարդկանց կոլեկտիվ ուժերն ու ջանքերը մեր ընդհանուր գործի համար: Այնուհետև ընկ. Ս. Սմբաթյանը խոսում է այն մասին, որ իրենց մոտ նույնպես քիչ չեն այն ագիտատորները, որոնք աշխատում են պարտքի ու խղճի մեծ զգացումով: Նրանք կատարում են մեկ

համընդհանուր գործ, հոգ են տանում, որ
աշխատանքը լավ գնա կոլտնտեսությու-
նում, իրենց խոսքը բուն նպատակակետին
հասնի և այն ամրապնդվի գործով։ Այդպի-
սի սրտակից մարդկանցից է ագիտատոր
Հակոբ Հակոբյանը։ Նա լավ ծանոթ է կոլ-
տնտեսային արտադրությանը։ Ավելի քան
12 տարի հմտորեն ղեկավարել է կոլտնտե-
սության բամբակագործական բրիգադներից
մեկը և այդ տարիների ընթացքում ստա-
ցած բարձր բերքով ոչ ոքի չի զիջել իր
առաջնությունը։

Բայց միակողմանի կլինի ասել, որ մեր
բոլոր ագիտատորները լավ են աշխատում։
Լավերի կողքին դեռ կան ագիտատորի մեծ
կոչումը չարդարացնողներ։ Եթե բոլոր ա-
գիտատորները լավ աշխատեին, ինչպես
պետքն է իրենց ուժերը ներդնեին ագի-
տացիայի գործին, ապա հաջողությունները
ավելի շատ կլինեին։

Ագիտկոլեկտիվի ղեկավար Ս. Սմբաթյա-
նը իր նամակում նշում է, որ ագիտատոր
Սորոկինը միանգամայն իրավացի է, երբ
առաջ է քաշում աշխատավորների կոմու-
նիստական դաստիարակության գործում
ագիտատորների դերի բարձրացման հարցը։
Դրա հետ սերտորեն առնչվում են նաև ար-



տադրության կատարելագործման, արտա-
դրողականության բարձրացման հարցերը։
Նա առանձնակի նշանակություն է տալիս
ներքին ռեզերվների լրիվ օգտագործմանը և
հեռանկարային հարցերի լայն պրոպագանդ-
մանը։ Դրանք մեր ագիտատորների առաջ-
նային անելիքները պետք է լինեն։

Գորիսի շրջանի Գորիս քաղաքի ագիտա-
տոր Թ. Փարսյանը կարդալով ագիտատոր
Սորոկինի հոդվածը գրում է. «Լինել ագի-
տատոր, նշանակում է վայելել պարտիայի
մեծ վստահությունը, դաստիարակել մարդ-
կանց։ Այդ տեսակետից շատ ուսանելի է
Բալթիական նավաշինական գործարանի
ագիտատոր, փականագործ Ն. Սորոկինի
«Ագիտատորի պարտքի մասին» խորագրով
հոդվածը»։ Որպես ագիտատոր,—շարունա-
կում է նա,— ես սիրով ու հաճույքով կար-
դացի Սորոկինի հոդվածը և լուրջ եզրակա-
ցության հանգեցի։ Միանգամայն ճիշտ է
նա, երբ ագիտատորների գործունեության
մեջ գլխավորը համարում է յուրաքանչյուր
մարդու միտքն ու սիրտը ամրապնդել, կո-
փել դեպի ժողովուրդը, պարտիան ունեցած
հավատարմությամբ։ Ուստի ամեն մի ագի-
տատոր սիստեմատիկաբար պետք է զբաղ-
վի աշխատավորների շրջանում կատարվող

քաղաքական-դաստիարակչական աշխատանքով, ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանի պարտիայի և կառավարության որոշումները։ Նա պետք է օգնի ետ մնացողներին, որպեսզի նրանք դառնան առաջավորներ, պաշտպանի ու խրախուսի լավ նախաձեռնությունը, աշխատանքի առաջավոր մեթոդները։

Ես կարծում եմ Սորոկինը որպես ագիտատոր իր նպատակին հասնում է այն պատճառով, որ նա արտադրության առաջավոր է և իր անձնական օրինակով ոգևորում է մյուսներին։ Ունկնդիրները նրան հարգում են նրա լավ աշխատանքի համար։ Հետևաբար ա[illegible]տատորը ամենից առաջ պետք է լավ աշխատող լինի, արտադրության առաջավոր և իր վարքագծով օրինակելի բոլորի համար։

Ագիտատոր Սորոկինը միանգամայն ճիշտ է, երբ խստորեն քննադատում է որոշ ղեկավարների, որոնք կտրվում են կոլեկտիվից, խուսափում են բանվորների հետ հանդիպումներ ունենալուց։ Այնինչ, պարտիան պահանջում է, որպեսզի սովետական և տնտեսական ղեկավարները վերջ տան գաղափարական աշխատանքի նկատմամբ եղած տգետ վերաբերմունքին, այն երկրոր-



դական գործ չհամարեն, ամբողջովին պատասխանատու լինեն կոլեկտիվի գաղափարական-քաղաքական և բարոյական վիճակի համար։

Ուստի լավ կլինի, որ հատուկ ուշադրություն դարձվի նաև ղեկավար աշխատողներին քաղաքական ագիտացիային մասնակից դարձնելու վրա։ Եթե ղեկավար աշխատողները անմիջական մասնակցություն ունենան ագիտացիոն աշխատանքներին, ապա ամենօրյա և ավելի սերտ կապ կստեղծվի աշխատավորների հետ, մեր ագիտացիան կլինի ավելի ազդեցիկ։ Բացի այդ, ղեկավար աշխատողները զրույցի ընթացքում կարող են կոնկրետ և սպառիչ պատասխան տալ ունկնդիրներին հուզող այն բոլոր հարցերին, որոնք վերաբերում են տվյալ ձեռնարկության, հիմնարկի, կոլտնտեսության կամ սովխոզի աշխատանքները բարելավելուն։

Ընթերցելով ագիտատոր Սորոկինի հոդվածը, Շահումյանի շրջանի տրիկոտաժի ֆաբրիկայի պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար Ս. Հակոբյանը գրում է, որ իրավացի է Սորոկինը՝ թերությունները պետք է վերացնենք մենք բոլորս, ով հանձն է առել ագիտատորի մեծ և պատվավոր պարտականությունը։

Ագիտատոր Սորոկինը ճիշտ է ասում, որ ամենակարևորը դա ագիտատորների ընտրությունն է։ Մի՞թե կարելի է ամեն մարդու վստահել այդ պատվավոր և պատասխանատու գործը, ո՛չ, չի կարելի։ Ագիտատորը հանդես է գալիս մեր հարազատ կոմունիստական պարտիայի անունից, որպես նրա որոշումների ամենաառաջին մասսայականացնողը։ Նա պետք է լավ իմանա տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության կամ սովխոզի առջև կանգնած խնդիրները, ճանաչի մարդկանց, ունենա նրանց հոգեբանության մեջ թափանցելու ունակություն և ինքը լինի բոլորից օրինակելի։ Այսպիսին է, օրինակ, մեր ֆաբրիկայի գործվածքային ցեխի ագիտատոր Ս. Օհանյանը։ Նա ոչ միայն բովանդակալից ու նպատակասլաց զրույցներ է ունենում ունկնդիրների հետ, այլև նրանց սրտակից ընկերն է, խորհրդատուն՝ աշխատանքում և կենցաղում։

Ագիտատոր Սորոկինը պահանջում է, որ պարտիական, տնտեսական առանձին ղեկավարներ չխուսափեն ժողովրդի հետ հանդիպումներ ունենալուց և համառորեն դաստիարակչական աշխատանք տանեն բնակչության մեջ։ Դա միանգամայն արդարացի պահանջ է։ Այդ նկատի ունենալով մեր



ֆաբրիկայի ղեկավարները, առաջին հերթին դիրեկտոր ընկ. Ջ. Տոնոյանը, որը միաժամանակ ագիտկոլեկտիվի ղեկավարն է, սերտորեն կապված է աշխատավորների հետ, հաճախակի նրանց համար զրույց է ունենում ֆաբրիկայի առջև դրված խնդիրների, սոցիալիստական մրցության արդյունքների և շատ ուրիշ կարևոր հարցերի վերաբերյալ։

Հմուտ ագիտատոր Սորոկինի ելույթը մեր ագիտատորների կողմից ընդունվեց ջերմությամբ, որոնք խոստացան աշխատել և պայքարել նրա օրինակով։

Նույն շրջանից ընկ. Խ. Կարապետյանը գրում է, որ ասում են ինչքան մարդ՝ այնքան բնավորություն, կամ թե՝ «ամեն սիրտ իր բանալին ունի»։ Դա իհարկե ճիշտ է։ Տարբեր մարդկանց նկատմամբ տարբեր մոտեցում է պետք։ «Բայց կա մի այնպիսի բանալի, որը բոլոր սրտերին էլ հարմար է՝ սրտակցությունը»։ Լավ է ասել Լենինգրադի Սերգո Օրջոնիկիձեի անվան Բալթիական նավաշինական գործարանի ագիտատոր Ն. Սորոկինը։

Վերջերս Երևանի Շահումյանի շրջանի գուլպայի ֆաբրիկայի ագիտատորների դպրոցի պարապմունքում քննարկվեց ագիտատոր Ն. Սորոկինի «Ագիտատորի պար-

քի մասին» հոդվածը։ Ագիտատորները նշեցին, որ ագիտացիոն աշխատանքի առաջավոր մեթոդները, տվյալ դեպքում ագիտատոր Սորոկինի փորձը, օգնում են ավելի խոր թափանցել մարդկանց հոգու մեջ, ավելի կոնկրետ ու անհատական դաստիարակչական աշխատանք կատարել մարդկանց հետ, այն օգնում է ավելի շատ սրտակցություն հանդես բերել մարդկանց նկատմամբ, ճիշտ ըմբռնել նրանց ձգտումներն ու ապրումները։

Նշանավոր ագիտատոր Սորոկինի խորհուրդները,— վերջերս գրում է իր նամակում Երևանի ձեթ-օճառի կոմբինատի դասախոսական խմբի անդամ ընկ. Խ. Մարտիրոսյանը,— շատ ուսանելի են և հանդիսանում են գործնական օգնություն բոլոր ագիտկոլեկտիվներին, պարտիական ղեկավար աշխատողներին և պարտիայի յուրաքանչյուր անդամի համար։ Ճիշտ է, մենք ունենք ագիտացիոն աշխատանքի, լավագույն ագիտկոլեկտիվների և առանձին ագիտատորների բազմաթիվ օրինակներ, սակայն ցավոք սրտի պետք է ընդունել, որ քիչ չեն նաև ագիտացիոն աշխատանքներում տեղ գտած թերությունները, որոնց մասին քննադատա-



կան դիտողություններ է անում ընկ. Սորո-
կինը։
Այնուհետև նամակի հեղինակը պատմում
է այն մասին, որ կոմբինատում կան լավա-
գույն ագիտատորներ, որոնք ագիտատորի
պատվավոր աշխատանքը կատարում են
մեծ բարեխղճությամբ և բարձր պատասխա-
նատվությամբ։ Այդպիսիններից են՝ կոմբի-
նատի հիդրոգենեզացիոն բաժանմունքի ա-
գիտատորներ Ռ. Հայրաթյանը, Վ. Սարգըս-
յանը, Ա. Կարապետյանը։ Նրանց սրտակից
զրույցները հնարավորություն են տվել, ինչ-
պես ընկ. Սորոկինն է ասում, գտնել յու-
րաքանչյուր աշխատողի սրտի բանալին։
Խմբագրությունը նամակներ է ստացել
նաև ռեսպուբլիկայի մյուս շրջանների, քա-
ղաքների և գյուղերի մի շարք ագիտատոր-
ներից, որոնք նույնպես ջերմ հավանու-
թյուն են տալիս ագիտատոր Ն. Սորոկինի
փորձին և խոստանում աշխատել նրա օրի-
նակով։
Ցանկալի է, որ մեր ագիտատորները շա-
րունակեն ուսումնասիրել ագիտատոր Ն.
Սորոկինի փորձը և ագիտացիոն ամբողջ
աշխատանքը ի սպաս դնեն արտադրական
խնդիրները հաջողությամբ լուծելու գործին։

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳԻՇԵՐՕԹԻԿ ԴՊՐՈՑՆԵՐԸ

Յոթ տարի առաջ ՍՄԿՊ XX համագումարը որոշում ընդունեց գիշերօթիկ դըպրոցներ կազմակերպելու մասին։ Կենսագործելով այդ պատմական որոշումը, Հայկական ՍՍՌ լուսավորության մինիստրությունը 1956—1957 ուսումնական տարում ռեսպուբլիկայում կազմակերպեց առաջին երեք գիշերօթիկ դպրոցները՝ երկուսը Երեվանում, իսկ մեկը՝ Կիրովականում։ Այնուհետև տարեցտարի ընդարձակվեց գիշերօթիկ դպրոցների ցանցը, իր մեջ ընդգրկելով հազարավոր երեխաներ։ Այժմ ռեսպուբլիկայում գործում է 28 գիշերօթիկ դպրոց, որտեղ սովորում են 9600-ից ավելի երեխաներ։ Միայն ընթացիկ ուսումնական տարվա սկզբին 8 նոր գիշերօթիկ դպրոցներ բացվեցին Երևանում, Ղափանում, Լենինականում, Կամոյում, Արթիկում, Գորիսում և Գագարինավանում։ Որպես նոր տիպի ուսումնական հիմնարկներ գիշերօթիկ դպրոցները անգնահատելի դեր են կատարում կոմունիստական հասարակության համար բազմակողմանի զարգացած, կրթված ու ակտիվ կառուցողներ դաստիարակելու գործում։ Շնորհիվ ստեղծված լայն հնարավորությունների, գիշերօթիկ դպրոցում հաջող է իրականացվում սաների ընդհանուր և պոլիտեխնիկական կրթությունը, բարոյական, էսթետիկական և ֆիզիկական դաստիարակությունը։ Գիշերօթիկ դպրոցներում սովորողները համեմատաբար լավ են նախապատրաստվում կյանքին, անմիջական պրակտիկ գործունեությանը և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորելուն։ Սաների կոլեկտիվ համակեցությունն ու աշխատանքը, ուսուցիչների ու դաստիարակների միասնական ջանքերը նպաստում են նոր մարդու ձևավորմանը։

Խելացիորեն օգտագործելով մասսայական դպրոցների լավագույն փորձն ու տրադիցիաները և գիշերօթիկ դպրոցի ընձեռած հնարավորությունները, մանկավարժական կոլեկտիվները հաջողությամբ աշակերտներին տալիս են կայուն գիտելիքներ։ Գոհունակությամբ կարելի է նշել, որ գիշերօթիկ դպրոցների I — IV դասարաններում գրեթե

վերացվել է երկտարեցիությունը, իսկ բար-
ձըր դասարաններում մնացողների թիվը
հասել է նվազագույնի։ Դրա գաղտնիքն
այն է, որ գիշերօթիկ դպրոցներում երեխա-
ների հետ տարվող ամբողջ աշխատանքը
սկսած ուսուցումից, դասապատրաստումից,
վերջացրած արտադասարանական խմբա-
կային բոլոր միջոցառումներով, կատար-
վում են մանկավարժների միջոցով և նրանց
օգնությամբ։ Ծնողների ֆունկցիաների մի
զգալի մասն այս դպրոցներում անցել է
մանկավարժներին, որոնք զբաղվում են ոչ
միայն երեխաների ուսուցման ու դաստիա-
րակության գործով, այլև հոգ են տանում,
որպեսզի նրանք ժամանակին սնվեն, մա-
քուր ու կոկիկ հագնվեն, խելացի և նպատա-
կասլաց անցկացնեն իրենց հանգիստն ու
ժամանցը։

Գիշերօթիկ դպրոցներում նպատակա-
սլաց կերպով է կազմակերպված երեխանե-
րի աշխատանքային դաստիարակությունը,
որն իրագործվում է ինչպես ուսուցման
պրոցեսում, այնպես էլ կոլեկտիվ ու անհա-
տական ինքնասպասարկման, հասարակա-
կան արտադրական աշխատանքներին մաս-
նակցելու միջոցով։ Կոլեկտիվ համակեցու-
թյան աշխատանքի պրոցեսում աստիճանա-



բար ձևավորվում է երեխաների անձնավո-
րությունը, կոփվում նրանց կամքն ու բնա-
վորությունը և նրանք դառնում են տոկուն,
աշխատասեր և կուլտուրական։ Դաստիա-
րակչական լավ աշխատանքի շնորհիվ գի-
շերօթիկ դպրոցում երեխայի անհատական
ընդունակություններն ու ձիրքը առավել
հաջող է դրսևորվում, զարգանում և ճիշտ
ընթացքի մեջ դրվում։ Այստեղ ամեն ինչ
կատարվում է կոլեկտիվում, կոլեկտիվի
միջոցով, կոլեկտիվի համար։ Դպրոցներում,
բացի առարկայական խմբակներից գործում
են խառատների, փականագործների, ատաղ-
ձագործների, լուսանկարիչների, կինոմե-
խանիկների, կոշկակարների, կար ու ձևի և
արտադասարանային այլ խմբակներ։ Այդ
խմբակներում երեխաներն ընդգրկված են
ըստ իրենց ցանկության և նախասիրության։
Շատ երեխաներ խմբակային աշխատանքի
միջոցով սովորել են իրենց դպրոցի կարիք-
ների համար պատրաստել դույլեր, ցնցուղ-
ներ, բռնիչներ, մուրճեր, ծաղկամաններ,
սպորտային գավաթներ, մոդելներ, մակետ-
ներ, աթոռիկներ, կարում են հագուստ,
ասեղնագործում սեղանի ծածկոցներ, զբաղ-
վում լուսանկարչությամբ, ցուցադրում
կինոնկարներ և այլն։

Կիրովականի, Լենինականի, Արզնու և Ծաղկաձորի դպրոցներն ունեն նաև ուսումնա-փորձնական հողամասեր։ Երեխաները շնորհալի գործեր են կատարում հողամասերում։ Այդ դպրոցները իրենց օժանդակ տնտեսությունից ստացած եկամտով երեխաներին ապահովում են թարմ բանջարեղենով, մրգով և կաթնամթերքով։ Հողամասերի մշակումը նպաստում է երեխաների գիտելիքների հարստացմանը, մտահորիզոնի ընդլայնմանն ու աշխատանքային, կոմունիստական դաստիարակությանը։ Երեխաները սովորում են հողը պարարտացնել քիմիական և օրգանական պարարտանյութերով, ուսումնասիրում են վարի, ցանքի, սածիլացման, քաղհանի, փխրեցման, բուժման, ծառերի և հատապտուղների տնկման և աճեցման, գյուղատնտեսական վնասատուների դեմ պայքարելու և անասուններին ռացիոնալ խնամելու աշխատանքները։

Ինքնասպասարկման և հանրօգուտ աշխատանքի շնորհիվ երեխաների մեջ սեր ու հետաքրքրություն է առաջանում ոչ միայն դեպի ֆիզիկական աշխատանքը, այլև աշխատանքի մարդիկ, հասարակական բարիքներ արտադրողները։ Եվ պատահական



չէ, որ այժմ գիշերօթիկ դպրոցների աշա-
կերտները ոչ միայն ակտիվ մասնակցու-
թյուն են ունենում խմբակային պարապ-
մունքներին, այլև մասնագիտություն են
ստանում և ձգտում նյութական արժեքներ
ստեղծել։ Օրինակ, Երևանի №№ 1, 2 գիշեր-
օթիկ դպրոցների շատ աշակերտներ [illegible]
են հմտացել խառատի մասնագիտությանը
և կոշկակարությանը, որ արտադրության
մեջ կարող են կատարել 3-րդ և 4-րդ կար-
գի խառատի կամ կոշկակարի աշխատանք։
Կիրովականի № 3 գիշերօթիկ դպրոցի հո-
ղամասի մշակման պրոցեսում սաներից
շատերը դարձել են այգեգործներ ու բան-
ջարաբույծներ։ Պետք է տեսնել թե այս
դպրոցի սաները ինչպիսի հպարտությամբ
ու հրճվանքով են ցույց տալիս իրենց նորո-
գած մահճակալները, հագուստի կախիչնե-
րը, շենքի նորոգման համար մետաղյա
մասերը, դռների բռնակները և այլ իրեր։

Գիշերօթիկ դպրոցներում լայն հնարա-
վորություններ են ստեղծված նաև երեխա-
ների էսթետիկական դաստիարակության
համար։ Բոլոր դպրոցներն ունեն երաժշ-
տական տարբեր գործիքներ, հեռուստա-
ցույցներ, ռադիոընդունիչներ։ Յուրաքան-
չյուր դպրոց ունի երգ-երաժշտության գծով

մասնագետ աշխատող, որոնց ղեկավարությամբ ծավալվում է երեխաների գեղարվեստական ինքնագործունեությունը: Դպրոցներում կան ասմունքի, երգ ու պարի, թատերական, նկարչական, քանդակագործակա[illegible]մբակներ, որոնցում երեխաները ակտի[illegible]ասնակցություն են ունենում: Պատշաճ ուշադրություն է դարձվում երեխաների ֆիզիկական դաստիարակությանը: Բոլոր դպրոցներն էլ ապահովված են սպորտային անհրաժեշտ համարանքներով ու գույքով:

ՍՄԿՊ նոր ծրագրում ասված է, որ «երեխաների վրա ընտանիքի ունեցած դաստիարակիչ ազդեցությունը պետք է ավելի օրգանապես զուգակցվի նրանց հասարակական դաստիարակությանը»: Այդ նպատակին էլ հենց կոչված են գիշերօթիկ դպրոցները: Իրոք, այդ նոր տիպի դպրոցները հսկայական դեր են կատարում աճող սերնդի հասարակական դաստիարակության ուղղությամբ: Եվ պատահական չէ, որ ծնողները ձգտում են իրենց երեխաներին գիշերօթիկ դպրոցներ տեղափոխել:

ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի որոշման համապատասխան կազմված է գիշերօթիկ դպրոցների զարգացման պլան: Ըստ այդ պլանի այսուհետև ևս ռեսպուբլիկայում ընդարձակվելու է գիշերօթիկ դպրոցների ցանցը: Ներկայումս ամենուրեք կառուցվում են գիշերօթիկ դպրոցների նոր, համարավետ շենքեր: Առաջիկա ուսումնական տարվա սկզբին նոր գիշերօթիկ դպրոցներ կբացվեն Սևանում, Իջևանում, Սպիտակում, Ապարանում և Ալավերդում: Միայն այս տարի գիշերօթիկ դպրոցների շինարարության և պահպանման վրա կծախսվի ավելի քան 7 միլիոն 728 հազար ռուբլի: Եթե դրան ավելացնենք նաև այն, որ շատ պետական-հասարակական կազմակերպություններ, սովխոզներ ու կոլտնտեսություններ շեֆական մեծ օգնություն են ցույց տալիս գիշերօթիկ դպրոցների ուսումնա-նյութական բազայի հարստացմանը, նոր շենքերի կառուցմանը, եղածների վերանորոգմանը, ապա պարզ կլինի թե այդ դպրոցներն ինչպիսի հոգատարությամբ են շրջապատված մեր երկրում:

ԱՐ. ՍԱՐԳՍՅԱՆ

Հայկական ՍՍՌ լուսավորության մինիստրության
դպրոցների տեսուչ

# ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆ



*Սովետական նկարիչների ավագ սերնդի մեջ նշանավոր տեղերից մեկը պատկանում է Մարտիրոս Սարյանին։ Նա անցել է երկար, ավելի քան կեսդարյա բեղմնավոր ստեղծագործական զարգացման ճանապարհ, որի մեծ մասը վերաբերում է սովետական ժամանակաշրջանին։*

*Մարտիրոս Սարյանը ծնվել է 1880 թվականին, Նոր Նախիջևանում, հողագործի ընտանիքում։ Դեռ վաղ հասակից նա դրսևորում է իր նկարչական ունակությունները։ Շուտով Սարյանը մեկնում է Մոսկվա և ընդունվում գեղանկարչության, քանդակագործության ու ճարտարապետության ուսումնարանը։ 1904 թվականին հաջողությամբ ավարտելով ուսումնարանը, նա մեկուկես տարի աշխատում է խոշոր նկարիչներ Վ. Ա. Սերովի և Կ. Ա. Կորովինի արվեստանոցներում։ Սկսած 1901 թվականից Մ. Սարյանը մասնակցում է Մոսկվայում, Պետերբուրգում և Ռուսաստանի այլ քաղաքներում կազմակերպվող ցուցահանդեսներին։*

*1901 թվականին Սարյանը առաջին անգամ գալիս է Հայաստան։ Հմայված հայրենի երկրի գեղեցիկ բնությամբ նա իր կտավների վրա արտացոլում է Հայաստանի բնանկարը։ 1910—1913 թվականներին Սարյանը մեկնում է արտասահման. լինում Թուրքիայում, Իրանում, Եգիպտոսում։ Այս երկրների հետ ծանոթանալուց հետո նա ստեղծում է Արևելքի բնությունն ու կենցաղը արտացոլող նկարներ, որոնց ինքնատիպությունը շուտով նկարչին բերեց մեծ համբավ։*

*Մարտիրոս Սարյանի գեղանկարչական հանճարեղ տաղանդը ծաղկեց ու փթթեց սովետական կարգերի հաստատումից հետո, երբ նրա առջև բացվեցին ստեղծագործական լայն հնարավորություններ։*

Սովետական կարգեր հաստատվելուց անմիջապես հետո, 1921 թվականին Մ. Սարյանը տեղափոխվում է Երևան և ակտիվորեն մասնակցում Սովետական Հայաստանի կուլտուրական շինարարությանը։ Տաղանդավոր արվեստագետը իրեն հատուկ երիտասարդական եռանդով աշխատում է ժողովրդական կուլտուրայի ասպարեզում՝ նպաստելով նրա իսկական բարգավաճմանը։

1924 թվականին Սովետական Հայաստանի կառավարությունը Սարյանին գործուղեց Վենետիկ՝ մասնակցելու միջազգային ցուցահանդեսին, որտեղ նրա գործերը արժանացան բարձր գնահատականի։

1926 թվականին ստեղծագործական բեղմնավոր գործունեության համար Մ. Սարյանը արժանացավ ժողովրդական նկարչի բարձր կոչմանը։

Վաստակավոր նկարիչը իր հիասքանչ ու գերող կտավների վրա պատկերել է մեր ռեսպուբլիկայի գյուղերն ու քաղաքները, հայրենի բնությունը՝ իր ժայռերով ու հորդահոս գետերով, զմրուխտե դաշտերով ու անտառներով, ապա Արարատյան դաշտա-



վայրը, որի վրա բարձրանում է հինավուրց Արարատը։

Սարյանը բուռն ոգեշնչումով արտացոլել է նաև սովետական մարդու ստեղծագործ աշխատանքը։ Կոմունիզմ կառուցող մարդու բնորոշ գծերը Սարյանը արտահայտել է մեր երկրի լավագույն մարդկանց բազմաթիվ դիմանկարների միջոցով։ Այդ գործերը նըկարված են մեր երկիրը խորապես սիրող հայրենասերի ձեռքով, նկարչական անգուգական վարպետությամբ։

Մ. Սարյանը միևնույն ժամանակ ակտիվ հասարակական գործիչ է։ 1929—1933 թվականներին, ապա՝ 1933—35 թվականներին Սարյանը ընտրվել է Հայաստանի ԿԳԿ անդամ, իսկ 1935 թվականին՝ Անդրկենտգործկոմի անդամ։ Սարյանը ՍՍՌՄ Գերագույն սովետի երկրորդ, երրորդ, չորրորդ, հինգերորդ գումարումների դեպուտատ է եղել։ Այժմ նա Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ է։

Պարտիան և կառավարությունը բարձր են գնահատել տաղանդավոր արվեստագետի ծառայությունները։ «Ալմաստ» օպերայի անկրկնելի ձևավորման համար նա ար-

ժանացել է Պետական մրցանակի։ Սարյանը պարգևատրվել է Լենինի երկու շքանշանով, «Աշխատանքային կարմիր դրոշի» և «Պատվո նշան» շքանշաններով, ինչպես նաև մի շարք մեդալներով։ Սարյանը ՍՍՌՄ Գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամ է, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս։ Մարտիրոս Սարյանը արժանացել է Լենինյան մրցանակի։

Ծննդյան 80-ամյակի առթիվ և ստեղծագործական բազմաբեղուն գործունեության համար Սարյանին շնորհվեց ՍՍՌՄ ժողովրդական նկարչի բարձր և պատվավոր կոչումը։

Ժողովրդական նկարիչը իր անխոնջ գործունեությամբ միշտ բարձր է պահում սովետական առաջավոր արվեստի դրոշը։

Կ. ՊՈՂՈՍՅԱՆ

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ՀՈՒՄՈՐ

## ԴԱ ԿԼԻՆԻ ԻՍԿԱԿԱՆ ՀՐԱՇՔ

ԲԺԻՇԿ (հիվանդին)— Այս դեղը հրաշքներ է գործում։ Ընդունելով այն, դուք վաղը կարող եք գնալ աշխատանքի։

ՀԻՎԱՆԴ.— Դա կլինի իսկական հրաշք, պարոն բժիշկ, չէ որ ես գործազուրկ եմ։

## ԱՄԵՆԱԼԱՎ ՄԻՋՈՑԸ

— Ասեք բժիշկ, երբ դուք հիվանդանում եք ուժեղ հարբուխով, ի՞նչ եք ընդունում։

— Ամեն օր վեց թաշկինակ։



— Չեք կարծում, պարոն բժիշկ, որ դա չափից ավելի թանկ է։ Չէ՞ որ երեխան միայն հիվանդ էր սովորական ծաղիկով։

— Այո, բայց ես ձեզ մոտ եկել եմ քսան անգամ։

— Իսկ այն, որ երեխայից վարակվել են դպրոցի բոլոր աշակերտները և դուք դրանից մեծ եկամուտներ ստացաք, հաշվի չեք առնու՞մ։

◆

ԲԺԻՇԿ (հանդիսավորությամբ)— Ձեր հիվանդության դեպքը արտակարգ կերպով կհարստացնի բժշկությունը։

ՀԻՎԱՆԴ— (առանց ոգևորության)— Ի՞նչ եք ասում պարոն բժիշկ, 10 դոլարից ավելի ես ձեզ վճարել չեմ կարող։

◆

— Եղա՞ր բժշկի մոտ։

— Այո։

— Եվ քեզ երկար քննեց։

— Երկու րոպե։ Ես հին հագուստով էի գնացել։

◆

— Ինչու՞ են այս նկարը կախել։

— Որովհետև նրա հեղինակին չեն կարողացել կախել։

◆

ՀԱՅՐԸ— Իսկ այս «Արևամուտն» է, որը նույնպես աղջիկս է նկարել։ Այսպես նկարել նա արտասահմանում է սովորել։

ՀՅՈՒՐԸ— Ահա թե ինչ... Այժմ պարզ է, թե ինչու ես երբեք չէի տեսել ձեզ մոտ, որ արևը այդպես է մայր մտնում։

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Ինդեքս՝ 77704

Отдел идеологической работы
ЦК КП Армении

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 11

1963

ՎԹ 06054 Պատվեր 438 Տիրաժ 8399

Հանձնված է արտադրության 26/V 1963 թ.
Ստորագրված է տպագրության 30/V 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի, մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.